Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։




# ԽԱՂԱՂԱՍԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՁԱՅՆԸ

Հուլիսի 15-ին ամերիկյան 6-րդ ռազմածովային նավատորմի նավերը մտան Բեյրութի նավահանգիստը և ծովային հետևակ ափ հանեցին Լիբանանի տերիտորիայում։ Ամերիկայի Միացյալ Նահանգների ռազմամոլները կոպիտ կերպով խախտելով Միավորված Ազգերի Կազմակերպության Կանոնադրությունը և ոտնահարելով միջազգային իրավունքի բոլոր նորմաները զինված ինտերվենցիա սկսեցին Լիբանանում։

Հետևելով իրենց ամերիկյան պարտնյորներին՝ Եգիպտոսում ջախջախված անգլիական գաղութարարները դեսանտային զորքեր իջեցրին Հորդանանում։ Ամերիկա-անգլիական ռազմական ինտերվենցիան Լիբանանում և Հորդանանում շարունակվում է ու գնալով ընդլայնվում։

Մերձավոր ու Միջին Արևելքում իրենց գաղութային տիրապետության հիմքերի խարխլման հետևանքով տագնապ ապրող





ամերիկա-անգլիական իմպերիալիստները, դիմելով ռազմական ինտերվենցիայի, նպատակ ունեն արյան մեջ խեղդել իրենց անկախության համար մարտնչող արաբական ժողովուրդների ազատագրական պայքարը, էլ ավելի սրել միջազգային լարվածությունը, սանձազերծել նոր, աշխարհավեր պատերազմ։

Ամերիկա-անգլիական ավանտյուրիստների ագրեսիվ գործողությունները ոչ միայն լրկտի պրովոկացիա են Արաբական Արևելքի երկրների նկատմամբ, այլև ահավոր սպառնալիք ամբողջ աշխարհի խաղաղությանը։ Աշխարհը հասցված է մեծ աղետի եզրին, նորից մթագնել է երկնակամարը և նրանում շրջում են պատերազմի սև ամպերը։ Ահա թե ինչու բոլոր երկրների առաջադեմ մարդիկ, նրանք, ում համար անչափ թանկ ու պաշտելի է խաղաղությունը, միահամուռ ցասումով դատապարտելով ռազմատենչ իմպերիալիստներին, պահանջում են վճռական միջոցների դիմել վերահաս աղետը կանխելու համար։ Ամբողջ աշխարհով մեկ բարձրացել է զայրույթի և ատելության հզոր ալիքն ընդդեմ պատերազմի հրձիգների։ Միլիոնավոր խաղաղասեր մարդիկ, երկրագնդի բոլոր ծայրերում, բոլոր աշխարհամասերում,



պահանջում են անհապաղ դադարեցնել կրակի հետ կատարվող խաղը, վերջ տալ ռազմական ինտերվենցիային Միջին ու Մերձավոր Արևելքում։

Պատմության այս ահեղ ժամին Սովետական Միությունը, որը միշտ հանդես է գալիս հանուն խաղաղության ամբողջ աշխարհում, անում է ամեն ինչ իրադարձությունների ընթացքը պատերազմի ուղուց դեպի խաղաղության ուղին վճռականորեն շուռ տալու համար։

Սովետական կառավարության հուլիսի 16-ի և հուլիսի 18-ի Հայտարարությունների մեջ, որոնք արժանացան մեր երկրի աշխատավորների ջերմ հավանությանն ու միահամուռ պաշտպանությանը, մինչև վերջ մերկացված են պատերազմի հրձիգների՝ զանազան պատրվակներով իրենց զինված հարձակումն արդարացնելու փորձերը։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչովը ուղերձներով դիմեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին, Մեծ Բրիտանիայի պրեմիեր-մինիստր Հ. Մակմիլանին, Ֆրանսիական Ռեսպուբլիկայի մինիստրների խորհրդի նախագահ Շ. դը Գոլին, Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ջ. Ներուին։

Ն. Ս. Խրուշչովի ուղերձներում հստակո-

րեն ընդգծված է ստեղծված դրության լրջությունը և ցույց է տրված այդ շրջանում կոնֆլիկտը կանխելու ճիշտ ուղին։ Այդ ուղերձները, ինչպես նաև Սովետական կառավարության հայտարարությունները միջազգային կարևոր նշանակություն ունեցող վավերագրեր են։

Սովետական կառավարության առաջարկը՝ Մերձավոր ու Միջին Արևելքում ստեղծված կոնֆլիկտը լուծելու նպատակով խոշոր տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցություն հրավիրելու մասին, մեծ գոհունակությամբ ընդունվեց բոլոր երկրների աշխատավորների կողմից։ Սովետական Միության նոր, խաղաղասիրական նախաձեռնությունը պաշտպանեցին շատ ու շատ երկրների կառավարություններ, քաղաքական պարտիաներ, պետական ու հասարակական գործիչներ, մասսայական կազմակերպություններ։

Համաշխարհային հասարակական կարծիքի ճնշման տակ արևմտյան տերությունների ղեկավարները ևս հարկադրված եղան արտահայտվելու բանակցություններ վարելու, Անվտանգության Խորհրդի շրջանակներում պետությունների ղեկավարների խորհրդակցություն հրավիրելու և նրանում Մերձավոր



ու Միջին Արևելքում ստեղծված դրության հարցը քննարկելու օգտին։

Ներկայումս, երբ խաղաքարտի վրա է դրված մարդկության բախտն ու ճակատագիրը, ամենափոքր հապաղումը անգամ կարող է միայն վնասել գործին։ Ոչ-ոքի իրավունք չի տրված խուլ ձևանալ և չլսել միլիոնավոր խաղաղասեր մարդկանց հզոր ձայնը, որոնք պահանջում են հանգցնել համաշխարհային հրդեհի օջախը Մերձավոր ու Միջին Արևելքում։

— Ագրեսիան պետք է դադարեցվի, խաղաղությունը պետք է ապահովվի։ Այդ են պահանջում աշխարհի բոլոր խաղաղասեր մարդիկ։

Մեր անծայրածիր հայրենիքի բոլոր քաղաքներում ու գյուղերում, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, աշխարհի բոլոր ծայրերում, այս օրերին տեղի են ունենում բողոքի ցույցեր ու միտինգներ։ Ամերիկյան ու անգլիական գաղութարարներին անարգանքի սյունին են գամում և՛ սովետական մարդիկ, և՛ չինացիք ու հնդիկները, և՛ չեխերն ու բարի կամքի տեր բոլոր մարդիկ, նրանք, որոնց համար ատելի է պատերազմը։

Անհուն ցասումով են լցված նաև Սովետա-

կան Հայաստանի աշխատավորների սրտերը։ Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, պետական հիմնարկներում տեղի ունեցած միտինգներում Հայաստանի աշխատավորները, իրենց համակրանքն արտահայտելով արաբական ժողովուրդների նկատմամբ, միահամուռ պաշտպանեցին Սովետական կառավարության հայտարարությունները։ Հայ ժողովուրդը, նշավակելով ագրեսորներին և բողոքի իր ձայնը միացնելով սովետական ժողովրդի հուժկու ձայնին, միաբերան պահանջեց.

— Ձեռքներդ հեռու Լիբանանից, Հորդանանից, Իրաքից։ Ագրեսորներ դուրս Մերձավոր ու Միջին Արևելքից։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի բանվորների և ծառայողների բազմամարդ միտինգում, առաջինը ելույթ ունենալով, ապարատավար Պ. Ուլիկյանն ասաց.

— Ես երկար տարիներ ապրել եմ Եգիպտոսում, Լիբանանում և Իրաքում։ Արաբները խաղաղություն և աշխատանք սիրող մարդիկ են։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ թուրք դահիճները թափում էին հարյուր հազարավոր հայերի արյունը, արաբները եղբայրական օգնու-



թյան ձեռք մեկնեցին մեզ, ապաստան տվեցին մեր հայրերին ու մայրերին։ Այդ բանը մենք երբեք չենք մոռանա։ Ներկայումս, նոր արաբական երկրների անկախությանը լուրջ վտանգ է սպառնում և այնտեղ պատերազմի սպառնալիք է ստեղծվել, մենք անտարբեր մնալ չենք կարող։ Դրա համար էլ մենք միաբերան ասում ենք՝ պարոնայք իմպերիալիստներ դուրս Արաբական Արևելքից, անցել է գաղութարարության դարը, միևնույն է դուք չեք կարող պատմության անիվը շրջել դեպի ետ։

Ախուրյան գյուղի կոլտնտեսականների միտինգում ցասումնալից ելույթ ունեցավ կոլտնտեսության ագրոնոմ Մանիկ Ոսկանյանը. նա ասաց.

— Մենք սովետական կանայքս լավ գիտենք թե ինչ է նշանակում պատերազմ։ Մեր հիշողությունից դեռ չեն ջնջվել երկրորդ համաշխարհային պատերազմի սարսափները, նրա պատճառած զոհերը, տառապանքները։

Նոր պատերազմը նշանակում է նոր զոհեր, նոր որբեր ու հաշմանդամներ, ավերված քաղաքներ ու գյուղեր։ Մենք ատում ենք պատերազմը և թույլ չենք տա իմպերիալիստներին, որ նրանք մի կաթիլ նավթի համար խմեն արաբական ժողովուրդների արյունը։

Մենք ավելի սերտորեն կհամախմբվենք հարազատ պարտիայի ու կառավարության շուրջը, մեր անձնվեր աշխատանքով կամրապնդենք խաղաղությունը։ Կորչի՛ պատերազմը, կորչեն գաղութարարները։

Ամենուրեք աշխատավորների միտինգներում ընդունվեցին բանաձևեր։

Ահա ինչ են գրել իրենց բանաձևում Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի բանվորները, ինժեներատեխնիկական աշխատողները և ծառայողները։

«Մենք զայրացած ենք ամերիկյան կառավարության գործողություններից և վճռականորեն բողոքում ենք նրա ագրեսիվ քայլերի դեմ, որովհետև գտնում ենք, որ այդ գործողությունները նոր, աշխարհակործան պատերազմի սպառնալիք են ներկայացնում։ Մենք անվերապահորեն պաշտպանում ենք Սովետական կառավարության Հայտարարությունը։ Դիմում ենք ամերիկյան կառավարությանը՝ պահանջելով նրանից անհապաղ վերջ տալ ագրեսիային, հարցականի տակից դուրս բերել մարդկության բախտը։ Մեր սրտի ձայնով գոչում ենք.

Ձեռքներդ հեռու արաբական երկրներից, թող նրանք կառուցեն իրենց ազատ ու երջանիկ կյանքը»։



Օրը-օրին ավելի է աճում խաղաղության մարտիկների բանակը, ավելի բարձր է ծածանվում խաղաղության վեհ դրոշը։ Վստահ իրենց ուժերի նկատմամբ, լցված ագրեսիան խափանելու վճռականությամբ, ժողովուրդները շարունակում են պայքարը բաղձալի խաղաղության համար։

Օրերս Ստոկհոլմում իր աշխատանքն ավարտեց Զինաթափման և Միջազգային համագործակցության համաշխարհային կոնգրեսը։ Արտահայտելով աշխարհի բոլոր խաղաղասեր մարդկանց իղձերն ու ձգտումները, կոնգրեսը պահանջեց արագ և վճռական միջոցների դիմել Մերձավոր ու Միջին Արևելքում ամերիկա-անգլիական ագրեսիան կանխելու, կայուն և տևական խաղաղություն ապահովելու համար։

Կասկած լինել չի կարող, որ աշխարհի բոլոր ազատասեր մարդկանց ցասումի հզոր ալիքը ճանապարհից դեն կնետի ագրեսորներին, մարդկությանը կփրկի պատերազմի սպառնալիքից։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԻ ՔԱՆԻ ՁԵՎԵՐԻ ՄԱՍԻՆ

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Երևանի պարտիական կազմակերպությունները վերջին տարիներում կուտակել են բնակչության մեջ մասսայական-քաղաքական աշխատանք տանելու որոշ դրական փորձ, սկսել են օգտագործել ագիտացիոն աշխատանքի տարբեր և ավելի արդյունավետ ձևեր։ Այդ ձևերի թվին են պատկանում բանավոր ժուռնալները, հարց ու պատասխանի երեկոները, թեմատիկ երեկոների կազմակերպումը և այլն։

Կիրովի անվան գործարանի, Կանազի, բրդյա նուրբ գործվածքների կոմբինատի, Երևանի երկաթուղային հանգույցի և այլ պարտկազմակերպությունների կազմակերպած բանավոր ժուռնալները կենդանի հետաքրքրություն առաջ բերեցին ունկնդիրների մեջ։



Բանավոր ժուռնալների ծրագիրը չափազանց բազմազան է։ Այստեղ տրվել են միջազգային հարաբերությունների հարցերի, գիտության և տեխնիկայի նորությունների, քաղաքի և շրջանների զարգացման հեռանկարների, արտադրության առաջավորների նվաճումների, գրականության և արվեստի նորությունների մասին ինֆորմացիաներ, ցուցադրվել են գեղարվեստական ու դոկումենտալ ֆիլմեր։

Կիրովի անվան գործարանի պարտիական կազմակերպության անցկացրած բանավոր ժուռնալում կային հետևյալ միջոցառումները. ակադեմիկոս Ս. Մերգելյանը պատմեց նորագույն էլեկտրոնային-մաթեմատիկական մեքենաների մասին, Հայֆիլմ ստուդիայի դիրեկտոր Մ. Դավթյանը պատմեց ռեսպուբլիկայի կինոարվեստի մասին։ Հրավիրված սպորտսմեն Վ. Ենգիբարյանը իր տպավորությունները հաղորդեց օլիմպիական 16-րդ խաղերի մասին։ Վերջում ցուցադրվեց կինոֆիլմ։

Կանազի կուլտուրայի պալատում կայացած բանավոր ժուռնալին մասնակցում էին 800 մարդ։ Այստեղ մեծ ուշադրությամբ լսվեցին

քաղկոմի հասարակայի՛ն դասախոս Ս. Պապյանի զեկուցումը «Միջազգային դրության հիմնական հարցերի մասին», երաժշտական կոմեդիայի թատրոնի դիրեկտոր Վարժապետյանի զեկուցումը «Երաժշտական կոմեդիայի թատրոնի մասին», կոմպոզիտոր Վ. Տիգրանյանի զեկուցումը ռեսպուբլիկայի երաժշտական արվեստի նվաճումների մասին։

Երաժշտական կոմեդիայի թատրոնի ներկա գտնվող դերասանները, Կուլտուրայի պալատի գեղարվեստական ինքնագործունեության մասնակիցների հետ միասին ցույց տվեցին իրենց վարպետությունը։ Երեկոյի վերջում ցուցադրվեց գեղարվեստական ֆիլմ։

Ներկա գտնվողներից շատերի վկայությամբ բանավոր ժուռնալի երեկոն անցավ մեծ հաջողությամբ։

Հաշվի առնելով ունկնդիրների կազմը, բանավոր ժուռնալը որոշ չափով այլ ձևով կազմակերպվեց քաղաքի կոմերիտականների և երիտասարդության համար պետկրկեսի շենքում։ Այստեղ «Սովետական քաղաքացիների իրավունքների և պարտականությունների մասին» բովանդակալից զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՌ Արդարադատության մինիստրի տեղակալ Թադևոսյանը։ Այնուհետև երեկոյի մասնակիցները



լսեցին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր Ֆիզկուլտուրայի և սպորտի կոմիտեի նախագահ Ա. Խաչիկյանի հակիրճ զեկուցումը միջազգային ասպարեզում սովետական սպորտի նվաճումների մասին։ Եզրափակիչ մասում ռեսպուբլիկայի լավագույն մարմնամարզիկները ցուցադրեցին իրենց վարպետությունը։

Երեկոն անցավ բովանդակալից և հետաքրքիր։ Երևանի երկաթուղային հանգույցի պարտիական կազմակերպության անցկացրած բանավոր ժուռնալի երեկոն նույնպես շատ ունկնդիրներ հավաքեց։ Այնտեղ անցկացվեցին հետևյալ միջոցառումները. հակիրճ ինֆորմացիաներ ընթացիկ մոմենտի, Երևան քաղաքի հեռանկարային զարգացման մասին։ Գրող Ս. Խանզադյանը պատմեց այն մասին, թե ինչի վրա են աշխատում Հայաստանի գրողները, իսկ Կինոստուդիայի դիրեկտոր Մ. Դավթյանը՝ արտասահմանում սովետական կինոֆիլմերի ցուցադրման մասին։ Գրողներ Ա. Սարոյանը, Հ. Սահյանը, Գ. Սարյանը, Վ. Վարդանյանը, Ա. Շայբոնը հանդես եկան իրենց ստեղծագործություններից հատվածներով։ Երաժշտական կոմեդիայի թատրոնի արտիստների խումբը և ֆիզկուլտուրայի ինստիտուտի էս-

տրադային նվագախումբը շատ հետաքրքիր և բովանդակալից համերգ տվեցին։ Երեկոն ավարտվեց գեղարվեստական ֆիլմի ցուցադրումով։

Բանավոր ժուռնալների անցկացման պրակտիկան ցույց է տալիս, որ մասսայական-քաղաքական աշխատանքի այդ ձևը առավել մատչելի ձև է։ Բանավոր ժուռնալի առավելությունը կայանում է նրանում, որ այն հնարավորություն է տալիս հմտորեն զուգակցելու քաղաքական ակտուալ հարցերի պարզաբանումը աշխատավորների գեղարվեստական և կուլտուրական դաստիարակության հետ։

Որպեսզի բանավոր ժուռնալները լինեն ավելի հետաքրքիր և բովանդակալից անհրաժեշտ է լավ մտածել նրա թեմատիկայի մասին, բազմազան դարձնել այն, հաշվի առնելով լսարանի պահանջները։

Քաղաքի պարտիական կազմակերպությունները կիրառում են մասսայական-քաղաքական աշխատանքի նաև այնպիսի ձև, ինչպիսին է հարց ու պատասխանի երեկոները, որոնք աշխատավորների մեջ ոչ պակաս հաջողություն են ունենում։

Հարցեր հավաքելու համար տարբեր ձևեր են օգտագործվում. մի դեպքում, ինչպես այդ



արվում է Կիրովի անվան գործարանում, հարցերի համար փակցվում են հատուկ արկղիկներ, մյուս դեպքում հարցերը աշխատավորներից հավաքվում են անմիջականորեն, դրա համար օգտագործելով լայն մասսայական հավաքները, օրինակ, կինոցուցադրումից կամ ներկայացման բեմադրումից առաջ և այլն։

Հարցերի և պատասխանների երեկոների կազմակերպման ժամանակ կարևոր մոմենտ է հանդիսանում առաջադրված հարցերին պատասխանող մարդկանց ճիշտ ընտրությունը։ Նորքի, Զարբախի, Ն. Զեյթունի, Կանազի կուլտուրայի տներում անցկացված հարցերի և պատասխանների երեկոներում որպես զեկուցողներ հանդես են եկել պարտիայի քաղկոմի քարտուղարներ, Քաղսովետի աշխատողներ, մինիստրներ, քաղաքի ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարներ։

Աշխատավորներին հետաքրքրում են միջազգային դրության, ներքին քաղաքականության, առևտրի կազմակերպման, քաղաքի բարեկարգման և այլ հարցեր։

Հարցերի և պատասխանների ձևով պարտիայի և կառավարության քաղաքականության պարզաբանումը առավել կոնկրետ

բնույթ է ստանում այն պատճառով, որովհետև աշխատավորները պարզ պատկերացում են կազմում հենց այն հարցերի մասին, որոնք նրանց հետաքրքրում են տվյալ պահին։

Պարտիական կազմակերպությունները օգտագործում են մասսայական աշխատանքի նաև այլ ձևեր, օրինակ, թեմատիկ երեկոների կազմակերպումը։

Երիտասարդության համար «ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը» թեմայով հետաքրքիր երեկո կազմակերպեց Կանաչի կոմերիտական կազմակերպությունը։

Անասնաբուժական ինստիտուտի պարտիական կազմակերպությունը երեկո անցկացրեց հետևյալ թեմայով։ Բնակչության մեկ շնչին ընկնող մսի, յուղի և կաթի արտադրությամբ հասնել և անցնել ԱՄՆ-ին։

Պարտիայի Երևանի Քաղաքային կոմիտեն քննարկեց բանավոր ժուռնալների և հարցերի ու պատասխանների երեկոների կազմակերպման ու անցկացման փորձը։ Նշվեց, որ դրանք հանդիսանում են ագիտացիոն-մասսայական աշխատանքի մատչելի ձևեր և նպաստում են բանվորների ու ծառայողների քաղաքական և արտադրական ակտիվության բարձրացմանը։



Պարտիայի քաղկոմի բյուրոն պարտիական կազմակերպություններին հանձնարարեց աշխատավորության շրջանում մասսայական-քաղաքական աշխատանքի ժամանակ լայնորեն օգտագործել այդ ձևերը։

Այդ միջոցառումների իրականացումը հնարավորություն կտա մասսայական, քաղաքական աշխատանքը դարձնելու ավելի հետաքրքիր, կենդանի ու մատչելի։ Իսկ այդ հանգամանքը պարտիական կազմակերպություններին զգալիորեն կօգնի բարձրացնելու աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը, այն ուղղելու դեպի կոմունիստական շինարարության խնդիրների հաջող կատարումը։

---

# ՁՐՈՒՅՑ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

*Երևանի Պահածոների գործարանի բանջարեղենի ցեխի կարմիր անկյունը աշխատանքի ընդմիջման ժամերին բազմամարդ է լինում։ Այստեղ փակված լոզունգներն ու պլակատները, ճաշակով պատրաստված և ցուցափեղկերի վրա դասավորված ագիտացիոն նյութերը պատմում են Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորների ձեռք բերած նվաճումների մասին։*

*Կարմիր անկյունում փակցված են նաև գեղարվեստորեն ձևավորված ցեխի կոլեկտիվի սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները ու արտադրության առաջավորների լուսանկարները։ Հենց այստեղ ագիտատոր Դ. Գզոյանը սիստեմատիկաբար ունկնդիրների համար զրույցներ ու ընթերցանություններ է կազմակերպում ծանոթացնելով նրանց մեր երկրում տեղի ունեցող կարևորագույն իրադարձություններին, պարզաբանում է պարտիայի ու կառավարության որոշումները։ Այդ բոլորից բացի նա իր զրույցները հաճախ նվիրում է արտադրական հարցերին, հատկապես ստանձնած պարտավորությունների կատարմանը, պատմելով ունկնդիրներին գործարանի առանձին ցեխերի ու բաժինների աշխատողների ձեռք բերած հաջողությունների և այն խնդիրների մասին, որը ծառացած է ձեռնարկության առջև։*



*Ագիտատորի պարզ և մատչելի զրույցները միշտ էլ սիրով են լսում ունկնդիրները։*

*Ընթացիկ տարվա առաջին կիսամյակը ավարտելու և տարվա երկրորդ կիսամյակը թևակոխելու կապակցությամբ, օրերս ագիտատոր Գզոյանը իր հերթական զրույցը նվիրեց այն բանին, թե գործարանի կոլեկտիվը և ցեխի աշխատողները ինչպես են կատարում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։*

*— Մեր գործարանը Ստալինյան շրջանի այն ձեռնարկություններից է,— ասաց նա,— որը ստանձնելով բարձր պարտավորություններ, խոսք է տվել 1958 թվականի պետական պլանը ժամկետից շուտ կատարել։*

*Մրցությամբ ստանձնած պարտավորու-*

թյունների անթերի կատարումը ապահովելու
նպատակով,— շարունակում է նա,— ընթա-
ցիկ տարում գործարանի արտադրական և
օժանդակ ցեխերում տեղադրվեցին բարձր
արտադրողականությամբ աշխատող նորա-
գույն սարքավորումներ ու ագրեգատներ։

Ագիտատորը համառոտակի պատմում է,
թե որ ցեխում ինչպիսի միջոցառումներ է
անցկացված տեխնիկան ավելի արդյունավետ
օգտագործելու համար։ Այս տարի,— շա-
րունակում է նա,— մեր ցեխում տեղադրվե-
ցին կանաչ ոլորի և լոբու արդյունաբերական
մշակման մեքենայացված հարահոս ագրե-
գատներ։ Տեղադրված են նաև բուլղարական
տիպի խորտկային պահածոներ արտա-
դրող նոր սարքավորումներ, լայնացվեց ավ-
տոկլավի բաժանմունքը։ Բացի այդ մեքե-
նայացման ենթարկվեցին նաև աշխատատար
մի շարք պրոցեսներ։

Ագիտատորը կոնկրետ օրինակներ է բե-
րում, թե ինչպիսի խոշոր ազդեցություն ու-
նեցան տեխնիկական բարեփոխություննե-
րը իրենց ցեխի արտադրական պլանների
կատարման գործում։

— 1957 թվականին, մեր ցեխի կոլեկտի-
վը արտադրական պլանը կատարեց 86,6
տոկոսով,— ասում է ագիտատորը, իսկ այս



տարի անընդհատ գերակատարվում են ար-
տադրական պլանները։ Օրինակ, Հունիսի
արտադրական պլանը կատարվեց 132 տո-
կոսով։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին
պատմում է, թե ով, ինչպես է կատարում
Նոր տեխնիկան լրիվ կարողությամբ օգտա-
գործելու մասին իր ստանձնած պարտավո-
րությունները։ Նա նշում է, որ առանձնապես
բարձր արտադրողականությամբ է աշխա-
տել բանջարեղենի հերթափոխը, որը սոցիա-
լիստական մրցության մեջ ճանաչվել է հաղ-
թող և արժանացել գործարանի փոխանցիկ
դրոշին։ Ագիտատորը գովեստով է խոսում
Նաև մրցակից մրգի ցեխի կոլեկտիվի մա-
սին, որը առաջին կիսամյակի պլանը կա-
տարել է 109 տոկոսով։

— Ցեխերում, հերթափոխություններում
ու բրիգադաներում ծավալված գործարար
մրցության շնորհիվ,— ասում է ագիտատո-
րը,— գործարանը ընթացիկ տարվա առա-
ջին կիսամյակի համախառն արտադրանքի
պլանը կատարեց 116,8 տոկոսով, իսկ պա-
հածոների թողարկման պլանը՝ 122 տոկո-
սով։ Նույն ժամանակաշրջանում աշխատան-
քի արտադրողականությունը բարձրացել է
10 տոկոսով։ Այդ նշանակում է, որ այս տար-

վա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, յուրաքանչյուր բանվոր 4.600 ռուբլու ավելի արտադրանք է տվել։

Ավարտելով իր զրույցի առաջին մասը, ագիտատորը հանգամանորեն խոսում է նաև առաջիկայում գործարանի, մասնավորապես բանջարեղենի ցեխի առջև դրված խնդիրների մասին։

— Երկրորդ կիսամյակում,— ասում է ագիտատորը,— գործարանը բնակչությանը տալու է 30 միլիոն տուփ պահածո, որից բանջարեղենի ցեխը՝ 7 միլիոն տուփ։ Ինչպես ձեզ հայտնի է գործարանի կոլեկտիվը պարտավորվել է 1958 թվականի արտադրական պլանը կատարել ժամկետից 25 օր շուտ։ Նա բազմաթիվ կոնկրետ օրինակներով ցույց է տալիս այն լայն հնարավորությունները, որ կան գործարանում արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

Զրույցի վերջում ագիտատորը ունկնդիրներին հիշեցնում է եղբայրական Վրաստանի Գորիի, Ադրբեջանի Խաչմասի և Օդեսայի Վորոշիլովի անվան պահածոների գործարանների աշխատողների հետ կնքված սոցմրցության մասին։

---



# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Ամեն օր մեր մեծ երկրի տասնյակ հազարավոր արդյունաբերական ձեռնարկություններից, կոլտնտեսություններից, սովխոզներից և ՆՏԿ-ներից ուրախալի լուրեր են ստացվում ձեռք բերված նոր հաջողությունների մասին։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական Վիճակագրական Վարչության կողմից օրերս հրապարակված հաղորդագրությունը ամփոփում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության այն նոր հաջողությունները, որ նա ձեռք է բերել այս տարվա առաջին կիսամյակում։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

☆ ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի առաջին կիսամյակի պլանը կատարվել է 104 տոկոսով։ 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի արտադրությունը ավելացել է 10,5 տոկոսով։

☆ Բոլոր միութենական ռեսպուբլիկաները գերա-

կատարել են առաջին կիսամյակի համախառն արտադրանքի թողարկման և արտադրանքի կարևորագույն տեսակների մեծ մասի պլանը։ Պլանը կատարել ու գերակատարել են բոլոր ժողտնտխորհները, բացի Սախալինի ժողտնտխորհից։ Մեր ռեսպուբլիկան պլանները կատարել է 105 տոկոսով, որը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կազմում է 113 տոկոս։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակում, 1957 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, սև և գունավոր մետալուրգիայի արդյունաբերության արտադրանքը ավելացել է 109 տոկոսով, վառելիքային ու էներգետիկ արդյունաբերությանը՝ 110 տոկոսով, մեքենաշինությանն ու մետաղամշակությանը՝ 114 տոկոսով, քիմիական և ռետինի արդյունաբերությանը՝ 113 տոկոսով, սննդի արդյունաբերությանը՝ 105 տոկոսով։

☆ Այս տարվա առաջին կիսամյակում մեր երկրում արտադրվել է 19,3 միլիոն տոննա չուգուն, 27 միլիոն տոննա պողպատ, 21,3 միլիոն տոննա գլանվածք, 2,2 միլիոն տոննա պողպատե խողովակներ, 25 միլիոն տոննա կոքս, 43,2 միլիոն տոննա երկաթաքար։

☆ Մեծ հաջողություններ են ձեռք բերված վառելիքային և էներգետիկ արդյունաբերության գծով։ Նույն կիսամյակում արտադրվել է 54 միլիոն տոննա նավթ, 245 միլիոն տոննա ածուխ, 13,1 միլիարդ խո-



րանարդ մետր բնական գազ, 114 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։

★ Կիսամյակում արտադրվել են 6,2 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր, 844 հազար տոննա կալցիացված սոդա, 2,4 միլիոն տոննա ծծմբաթթու։

☆ Խոշոր հաջողություններ են ձեռք բերված ավտոարդյունաբերության բնագավառում։ Այս տարվա վեց ամսում արտադրվել է 255 հազար ավտոմոբիլներ, այդ թվում՝ 194 հազար բեռնատար ավտոմոբիլներ և ավտոբուսներ, 61 հազար մարդատար ավտոմոբիլներ և 7,1 միլիոն ավտոդողեր։

☆ Մեր երկրի ձեռնարկությունները հագեցվել և դեռ կհագեցվեն ժամանակակից ու ավելի կատարելագործված սարքավորումներով։ Միայն այս տարվա առաջին կիսամյակում արտադրվել է 86,8 հազար տոննա մետալուրգիական սարքավորում, կես միլիարդ ռուբլու արժողությամբ քիմիական սարքավորում, 35,3 հազար տոննա նավթային ապարատուրա, 3,2 միլիոն կիլովատ շոգետուրբիններ, գազային և հիդրավլիկ տուրբիններ և նույն տուրբինների համար 2,4 միլիոն կիլովատ գեներատորներ, 2,8 հազար էլեկտրական խոշոր մեքենաներ, 1,1 միլիոն էլեկտրաշարժիչներ, 55 միիլոն էլեկտրավակուումային սարքեր, 69 հազար մետաղահատ հաստոցներ, 12,5 հազար դարբնա-մամլակային մեքենաներ։

☆ Անընդհատ վիթխարի չափերով ավելանում է գյուղատնտեսական մեքենաների թողարկումը։ Առա-

ջին կիսամյակում արտադրվել է 109 հազար (ֆիզիկական միավոր) տրակտոր, 111 հազար տրակտորային շարքացան, 37 հազար տրակտորային հնձիչ, 6 հազար հատիկազտիչ մեքենա։

☆ Երկաթուղային տրանսպորտի համար 1958 թվականի վեց ամսում արտադրվել է 320 մագիստրալային ջերմաքարշեր, 176 մագիստրալային էլեկտրաքարշեր, 20,3 հազար մագիստրալային բեռնատար վագոններ, 963 մագիստրալային մարդատար վագոններ։

☆ Շինարարական կարիքների համար առաջին կիսամյակում արտադրվել է 19,9 միլիոն տոննա ցեմենտ, 1 միլիարդ 160 միլիոն պայմանական սալիկ շիֆեր, 66,3 միլիոն քառակուսի մետր լուսամուտի ապակի, 315 միլիոն քառակուսի մետր փափուկ ծածկ, 12 միլիարդ աղյուս (առանց կոլտնտեսությունների արտադրածի), 8 միլիոն խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ և դետալներ, 4,2 միլիոն քառակուսի մետր բնակելի մակերես՝ ստանդարտ տներ, ստանդարտ ու տիպային տների դետալների կոմպլեկտներ։

☆ Բնակչության կարիքների համար արտադրվել է 82 հազար տոննա արհեստական և սինթետիկ թել, 2,9 միլիարդ մետր բամբակե, 146 միլիոն մետր բրդե, 239 միլիոն մետր վուշե, 419 միլիոն մետր մետաքսե գործվածքներ, 439 միլիոն զույգ գուլպեղեն, 175 միլիոն զույգ կաշվե և 13,9 միլիոն զույգ թաղիքե կոշիկ։

☆ Նույն ժամանակամիջոցում արտադրվել է նաև



12,1 միլիոն ժամացույց, 708 հազար լուսանկարչական ապարատ, 2 միլիոն ռադիոընդունիչ, 459 հազար հեռուստացույց, 181 հազար տնային սառնարան, 250 հազար լվացքի մեքենա, 1,3 միլիոն տնային կարի մեքենա, 1,8 միլիոն հեծանիվ և մոտոհեծանիվ, 31,9 հազար դաշնամուր և ռոյալ։

☆ Սննդի արդյունաբերությունն առաջին եռամսյակում երկրին տվել է կես միլիոն տոննա երշիկեղեն, 1,4 միլիոն տոննա ձուկ, 9,8 միլիոն տոննա կենդանական յուղ, 842 հազար տոննա հրուշակեղեն, մեկ միլիարդ 123 միլիոն պայմանական տուփ պահածոներ և այլն։

☆ Արդյունաբերական արտադրանքի վերը հիշված հիմնական տեսակների արտադրությունը 1958 թվականի առաջին կիսամյակում, 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, ավելացել է 102 տոկոսից մինչև 230 տոկոս։

☆ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում մոտավորապես 900 հազար գյուտարարներ և ռացիոնալիզատորներ մտցրել են մեկ միլիոն 300 հազար առաջարկ։ Այդ նույն ժամանակամիջոցում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է ավելի քան 750 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկ։

☆ Նույն ժամանակամիջոցում աճել է աշխատանքի արտադրողականությունը։ 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, 1958 թվականի առաջին կիսամյակում արդյունաբերության մեջ աշխատող

բանվորների աշխատանքի արտադրողականությունը աճել է 6 տոկոսով, շինարարության մեջ 10 տոկոսով։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվորների և ծառայողների թիվը վեց ամսում աճել է մեկ միլիոնով։

☆ Պարտիայի և կառավարության կողմից իրագործվող միջոցառումների շնորհիվ վիթխարի հաջողությունների է հասել մեր երկրի գյուղատնտեսությունը։ Անցյալ տարվա համեմատությամբ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածություններն այս տարի ընդարձակվել է մեկ ու կես միլիոն հեկտարով։

☆ Մեր երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները 1958 թվականի հուլիսի 1-ի տվյալներով ունեն 43,8 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր անասուններ, որից 13,9 միլիոնը կովեր, 34,8 միլիոն գլուխ խոզեր և 119,3 միլիոն գլուխ ոչխարներ ու այծեր։

☆ Անցյալ տարվա համեմատությամբ ՍՍՌՄ-ում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 4,5 միլիոնով, այդ թվում կովերինը՝ 900 հազար գլխով, խոզերինը՝ 3,3 միլիոնով, ոչխարներինը և այծերինը՝ 8,3 միլիոնով։ Թռչունների թիվն ավելացել է 15 տոկոսով։ Ավելացել է կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների սեփական անասունների գլխաքանակը։

☆ Կոլտնտեսություններում և սովխոզներում անասնաբուծական մթերքների պետական մթերումներն ու գնումները 1957 թվականի նույն ժամանակամիջոցի



համեմատությամբ ավելացել են. անասուններինը՝ 25 տոկոսով, կաթինը՝ 9 տոկոսով, ձվինը՝ 15 տոկոսով, բրդինը՝ 13 տոկոսով։

☆ Այս տարվա հուլիսի 1-ի տվյալներով ՍՍՌՄ կոլտնտեսությունների 65 տոկոսը ՄՏ կայաններից գնել են իրենց անհրաժեշտ տեխնիկան։ Կոլտնտեսությունները ձեռք են բերել 406 հազար տրակտոր, 137 հազար կոմբայն և շատ այլ մեքենաներ։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև տրանսպորտի և կապիտալ շինարարության բնագավառում։ Մեծ չափերով ավելացել է տրանսպորտի բեռնաշրջանառությունը, բեռների փոխադրումները, իսկ կապիտալ ներդրումներն ավելացել են 6-ից մինչև 28 տոկոս։ Միայն մեր ռեսպուբլիկայում այն կազմում է 133 տոկոս։

☆ Այս հաջողությունների հետ միասին մեծ չափերով բարձրացել է ժողովրդի կյանքի, նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակը։

Կիսամյակում աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերված սոցիալիստական կուլտուրայի բոլոր բնագավառներում։

---

## ՔԻՄԻԱՆ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆԸ

### ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՈՐՏԱ

Սինթետիկ նյութերը ավելի ու ավելի լայն կիրառություն են գտնում բժշկության մեջ։ Վիրավորման, սկլերոզի, արյունատար անոթների խցանման ժամանակ, արյունը դադարում է մարդու մարմնի այս կամ այն մասը հոսել։ Վիրաբուժները սովորել են արյունատար անոթների վնասված մասերը փոխարինել թափանցիկ, ճկուն պոլիքլորվինիլային խողովակով։ Հայտնի են դեպքեր, երբ ականջի վնասված թմբկաթաղանթը փոխարինվել է պլաստմասսե բարակ թաղանթով։ Իսկ մի նուրբ վիրահատության ժամանակ սրտանոթի վնասված մասը փոխարինվել նեյլոնի խողովակի 10 սանտիմետր կտորվածքով։

### ՉՍՈՒԶՎՈՂ ՆԱՎԱԿ

Փորձարկման էին ենթարկում մի փրկարար նավակ։

Հզգնածությունից ուժասպառ ութ մարդ



անում էին ամեն ինչ, որպեսզի կարողանան ջրասույզ անել չորս տեղանի մի ոչ մեծ նավակ։ Նույնիսկ մինչև եզրերը ջրով լցված նավակը առաջվա պես թեթև, ինչպես լողաթաղանթը, մնում էր գետի երեսին։

Ձեզ, անշուշտ կհետաքրքրի, թե ինչից էր պատրաստված այդ նավակը։ Սովորական պլաստմասսայից։ Դա վերին աստիճանի թեթև նյութ է, որը չի ենթարկվում ոչ ժանգոտման և ոչ էլ ջրի քայքայիչ ազդեցության։

Նավակը փորձարկման դիմացավ նաև ամրության տեսակետից։ Ծանր մուրճով բազմհինգ անգամ հարվածեցին միևնույն տեղին, սակայն նավակը ոչ մի վնասվածք չստացավ։

### ՍԻՆԹԵՏԻԿ ՇԱՐԺԻՉ

Ներքին այրման ժամանակակից շարժիչը միանգամայն կատարելագործված մեքենա է։ Մեկ րոպեում մոտ 800 անգամ նրա գլաններով անցնում է մեծ լարման կայծը, բռնկվում է վառելանյութը, միաժամանակ բացվում և փակվում են փականները։ Սահուն, առանց ընդհատման աշխատում է այդ փոքրիկ «տեխնիկական հրաշքը», որի վրա մենք վաղուց արդեն դադարել ենք զարմանալ։

Արդյո՞ք այդ լարված մեխանիզմի մեջ տեղ ունեն պլաստմասսաները թե ոչ։ Թվում է, թե միայն մետաղն է ընդունակ դիմանալ յոթանասուն ձիաուժանոց շարժիչի արագության, ճնշմանը և ջերմությանը։ Սակայն դա այդպես չէ։ Ի հարկե դեռևս մխոցը կամ շուռովիկ շարժանակը չի կարելի պատրաստել պլաստմասսաներից, սակայն շարժիչում մետաղյա շատ մասեր պետք է փոխարինվեն ավելի էժան և թեթև նյութերով։ Պատենատուփի և փոխանցման տուփի պլաստմասսե կափարիչները, զովացնող սիստեմի առանձին մասերը միանգամայն ռեալ և հնարավոր բաներ են։

Պոլիեթիլենից պատրաստած խողովակները կփոխարինեն մետաղե խողովակներին։ Դրանք ամուր ու ճկուն են և քայքայիչ թթուներից չեն վախենում։ Նեյլոնի առանցքակալները, որոնք չեն հալչելու և յուղման կարիք չեն զգալու, բրոնզից ավելի հուսալի կդառնան։ Յուղի պոմպի և փոխանցման տուփի ատամնանիվները կպատրաստվեն տեքստոլիտից և ուրիշ փոխարինողներից։ Դրանք կաշխատեն փափուկ, անաղմուկ ու երկար։

---



# ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՌԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

## Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա

☆ Սկսած 1950 թվականից Չինաստանում ամեն տարի դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում, հատուկ և բանվորա-գյուղացիական դպրոցներում, անգրագիտության լիկվիդացման կուրսերում և հեռակա ուսուցման սիստեմում սովորում են 60-ից մինչև 150 միլիոն մարդ։

☆ Երկրի ազատագրումից հետո մոտ 30 միլիոն մարդ արդեն վերացրել են անգրագիտությունը։ Ներկայումս անգրագիտության վերացման կուրսերում պարապում են 77 և կես միլիոն մարդ։

☆ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի գոյության ութը տարիների ընթացքում տարրական դպրոցներում սովորողների թիվը 24 միլիոնից հասել է 67 միլիոն մարդու, իսկ միջնակարգ դպրոցներում՝ 1,3 միլիոնից մինչև 6 միլիոն։ Ներկայումս Չինաստանի տարրական դպրոցներում սովորում է դպրոցա-

կան տարիքի երեխաների 63 տոկոսը, 1949 թվականի 25 տոկոսի փոխարեն։

☆ 1957 թվականին Չինաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էին 437 հազար ուսանող և ասպիրանտ։ ՉԺՌ-ի բուհերը ութ տարվա ընթացքում բաց են թողել տարբեր պրոֆիլի 369 հազար մասնագետներ՝ 150 հազարով ավելի, քան նախառևոլյուցիոն Չինաստանի բուհերի կողմից բաց է թողնվել հիսուն տարվա ընթացքում։

☆ Ժողովրդական իշխանության ժամանակ առաջին անգամ կրթության իրավունք ստացավ երկրի ազգային շրջանների բնակչությունը։ Այժմ ռեսպուբլիկայի զանազան ուսումնական հաստատություններում սովորում են ազգային փոքրամասնությունների պատկանող ավելի քան 3 միլիոն պատանի և աղջիկ։

☆ Ժողովրդական իշխանության օրոք, Չինաստանի պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց Գիտությունների ակադեմիա։ 1957 թվականի վերջին նրա տնօրինության տակ էին գտնվում 68 գիտա-հետազոտական ինստիտուտ և հիմնարկություն՝ 5.500 գիտաշխատողներով, ասիստենտներով և պրակտիկանտներով։

☆ Չինաստանի գիտնականները կազմել են գիտության զարգացման 1956—1967 թվականների պլան, որտեղ խնդիր է դրված՝ գիտության և տեխնիկայի այն բնագավառներում, որոնք կարևոր նշանակություն ու-



նեն ՉԺՌ-ի ժողովրդական տնտեսության համար, հասնել համաշխարհային առաջավոր մակարդակին։

☆ Ժողովրդական Չինաստանում լայն զարգացում է ստացել հրատարակչական գործը։ ՉԺՌ-ում աշխատում են քաղաքական, գեղարվեստական, օտարերկրյա և տեխնիկական գրականության ավելի քան 100 հրատարակչություններ։ 1950 թվականից մինչև 1956 թվականը հրատարակված է գեղարվեստական գրականության ավելի քան 28 հազար անուն ստեղծագործություն, 536 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։ Ամեն ամիս չինական ընթերցողները ստանում են 83 գրական-գեղարվեստական ամսագրեր, որոնք լույս են տեսնում 3 միլիոն 400 հազար օրինակ տիրաժով։

☆ Երկրում լույս են տեսնում 285 խոշոր թերթեր՝ 10 միլիոն 510 հազար օրինակ տիրաժով և 370 ամսագիր՝ 16 միլիոն 688 հազար օրինակ ընդհանուր տիրաժով։

☆ Պետական թատերական կոլեկտիվների հետ միասին Չինաստանում այժմ գոյություն ունեն ավելի քան 2.700 ինքնագործ թատերական կոլեկտիվ։ ՉԺՌ-ի բանվորներն ու ծառայողները ձեռնարկություններում կազմակերպել են մոտ վեց և կես հազար ինքնագործ խմբեր և մոտ 10 հազար թատերական խմբեր, որտեղ մասնակցում են 418 հազար մարդ։ Ներկայումս երկրում հաշվում է 20 հազար 198 երգեցիկ խումբ, երաժշտական պարային խմբեր և գրականության ու

արվեստը սիրողների խմբեր, որտեղ մասնակցում են 227 հազար մարդ։

☆ Չինաստանում ստեղծված է ավելի քան 2.500 քաղաքային պալատ և կուլտուրայի տուն և 380 հազար գյուղական ու գործարանային ակումբ։

☆ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում կան 244 խոշոր գրադարաններ՝ 64 միլիոն 500 հազար գրքի ընդհանուր ֆոնդով։ Նրանցից ամենամեծը՝ Պեկինի գրադարանը ունի 17 միլիոն գրքի ֆոնդ։ Բացի դրանից, երկրում աշխատում է ավելի քան 120 հազար գյուղական և 17 հազար գործարանային գրադարան։

☆ 1936 թվականին Չինաստանում եղել է միայն 300 կինոթատրոն, իսկ այժմ ամբողջ երկրում գործում են ավելի քան 8.600 կինոկետեր։ Այս տարի Չինաստանի կինոստուդիաները բաց կթողնեն 75 գեղարվեստական ֆիլմեր։

☆ Ժողովրդական Չինաստանում հաջողությամբ զարգանում են ռադիոհաղորդումները։ 1949 թվականին երկրում կար միայն մոտ 20 ոչ մեծ ռադիոկայաններ 110 կիլովատ ընդհանուր կարողությամբ։ Ներկայումս հաղորդումներ են տալիս մոտ 60 ռադիոկայաններ, որոնց ընդհանուր կարողությունը կազմում է 2.650 կիլովատ։



## Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկա

☆ 1956 թվականից ԿԺԴՌ-ում մտցված է պարտադիր տարրական կրթություն։ Ռեսպուբլիկայի 4016 տարրական դպրոցներում սովորում են մոտ 1 միլիոն 300 հազար երեխաներ։ Երկրում կա 306 միջնակարգ և ոչ-լրիվ միջնակարգ դպրոց։ Ոչ-լրիվ միջնակարգ դպրոցների թիվը 1944 թվականի համեմատությամբ ավելացել է 38 անգամ։

☆ Երկրում մինչև ժողովրդական իշխանության հաստատումը ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն չկար։ Այժմ դրանց թիվը հասնում է քսանի։ Ռեսպուբլիկայում կա նաև 207 տեխնիկումներ և 3.777 տարբեր կուրսեր։

☆ 1952 թվականին ԿԺԴՌ-ում ստեղծվել է Գիտությունների ակադեմիա։ Նրա կազմում կան 8 գիտահետազոտական ինստիտուտներ, 43 սեկտորներ և հրատարակչական բաժին։ Կորեական գիտնականները լուրջ հաջողությունների են հասել գիտա-հետազոտական աշխատանքում, գիտաշխատողների կադրերի պատրաստման, ուրիշ երկրների հետ գիտական կապերի զարգացման և ամրապնդման ուղղությամբ։

☆ Հետպատերազմյան ժամանակաշրջանում ԿԺԴՌ-ում վերականգնվել և կառուցվել են տասնյակ թատրոններ, 600 կինոթատրոն, 200 ակումբ։

☆ Վերջին երկու տարվա ընթացքում ԿԺԴՌ-ի կի-

նարվեստի աշխատողները բաց են թողել ավելի քան 200 գեղարվեստական, դոկումենտալ և գիտա-պոպուլյար ֆիլմեր։ 1957 թվականին ռեսպուբլիկայի կինոթատրոններում եղել են 92 միլիոն 200 հազար հանդիսատեսներ։

☆ 1957 թվականին ԿԺԴՌ-ի քաղաքներում և գյուղերում գործում էին 73 հազար երաժշտական, դրամատիկական և գեղարվեստական ինքնագործունեության ուրիշ խմբակներ։

☆ Ռեսպուբլիկայում հրատարակվում են 28 կենտրոնական և տեղական թերթեր, աշխատում են 10 ռադիոկայաններ։

## Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկա

☆ Մինչև ժողովրդական ռևոլյուցիան Մոնղոլիայում ոչ մի հանրակրթական դպրոց չկար։ Բնակչությունը համարյա ամբողջովին անգրագետ էր։

Այժմ ՄԺՌ-ում չափահաս բնակչության ավելի քան 99 տոկոսը գրագետ է։ Այստեղ այժմ սովորում է յուրաքանչյուր վեցերորդ մարդը։

☆ Երկրում կան 432 դպրոցներ, 16 տեխնիկումներ և 4 բուհեր։ Ազգային որակյալ կադրերի պատրաստման խոշորագույն կենտրոն է Չոյբալսանի անվան Մոնղոլական պետական համալսարանը, որը ստեղծվել է 15 տարի առաջ։ Այստեղ սովորում են 2.500 մարդ։



☆ Մոնղոլիայում բնակչության ամեն մի հազար հոգուն ընկնում է 20 մասնագետ՝ բարձրագույն կամ միջնակարգ կրթությամբ։ Բարձրագույն կրթություն ունեցողների 20 տոկոսը կանայք են։

☆ Բնակչության ամեն մի տասը հազար մարդուն ընկնող բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թվով Մոնղոլիան առաջ է անցել այնպիսի երկրներից, ինչպիսին են Իտալիան, Թուրքիան, Պակիստանը և Իրանը։

☆ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում լայն ասպարեզ է բացված արվեստի զարգացման համար։ Երկրում աշխատում են մի քանի երաժշտական-դրամատիկական թատրոններ, ժողովրդական երգի և պարի անսամբլներ, գեղարվեստական ուսումնարաններ, մանկական երաժշտական և խորեոգրաֆիկ դպրոց, գեղարվեստական ինքնագործունեության հարյուրավոր խմբեր։ ՄԺՌ-ի թատրոններում ներկայացվում են մոնղոլական և արտասահմանյան հեղինակների ստեղծած ներկայացումներ և օպերաներ։

☆ ՄԺՌ-ում լույս են տեսնում 26 թերթ և 15 ամսագիր։

## Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկա

☆ ՎԴՌ-ի կազմավորման պահից, 1945 թվականից մինչև 1954 թվականը երկրում գրագիտություն է սո-

վորել 11 միլիոն մարդ։ Ռեսպուբլիկայի կառավարությունը մշակել է անգրագիտության վերացման 1956—1958 թ. թ. եռամյա պլանը։ 1955—1957 թվականներին անգրագիտությունը վերացրել են մոտ 1 միլիոն 200 հազար մարդ։ 1958 թվականին անգրագիտության վերացման աշխատանքը լրիվին ավարտվել է։

☆ 1939 թվականին տարրական և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը երկրում կազմում էր 300 հազար մարդ։ Ներկայումս ՎԴՌ-ում դպրոց են հաճախում ավելի քան 1 միլիոն 600 հազար երեխաներ։

☆ Անցյալում, գաղութային ռեժիմի պայմաններում, ամբողջ Հնդկա-Չինում կար միայն մեկ բարձրագույն ուսումնական հաստատություն։ Այժմ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում կա վեց բարձրագույն ուսումնական հաստատություն, որտեղ սովորում են մոտ 4 հազար ուսանողներ՝ ութ անգամ ավելի, քան 1939 թվականին ամբողջ Հնդկա-Չինում։

Երկրում ստեղծված է 14 մասնագիտական ուսումնական հաստատություն։

☆ ՎԴՌ-ում հաջողությամբ զարգանում է գիտությունը։ Ռեսպուբլիկայում արդեն բացվել են մի քանի գիտա-հետազոտական ինստիտուտներ։

☆ Վերջին երեք տարում ՎԴՌ-ում միայն վյետնամերեն լույս է ընծայվել մոտ 23 հազար օրինակ տարբեր գիրք, 11,5 անգամով ավելի, քան 1939 թվականին։

---

ԱՇԽԱՐՀԻ ՔԱՐՏԵԶԻ ԱՌՋԵՎ

# ԻՐԱՔԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

(ՏԵՂԵԿԱՆՔ)

Իրաքը գտնվում է Մերձավոր Արևելքում և սահմանակցվում է Իրանի, Թուրքիայի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, Հորդանանի, Սաուդական Արաբիայի և Կուվեյտի հետ։ Նրա տերիտորիան կազմում է 444 հազար 400 քառակուսի կիլոմետր։ Բնակչությունը 5 միլիոնից ավելի է, որի 80 տոկոսը արաբներ են, իսկ մնացածը՝ հայեր, քրդեր և այլ ազգությունների ներկայացուցիչներ։ Մայրաքաղաքն է Բաղդադը, որի բնակչությունը հաշվում է 552 հազար մարդ։ Երկրի մյուս խոշոր քաղաքներից են՝ Մոսուլը՝ 340 հազար, Բասրան՝ 306 հազար, Կիրկուկը՝ 148 հազար բնակչությամբ։

Երկրի էկոնոմիկայում հիմնական դերը պատկանում է գյուղատնտեսությանը, որը աչքի է ընկնում հողագործության և անասնաբուծության զարգացման ցածր մակարդակով։ Իրաքը հանդիսանում է տնտեսապես թույլ զարգացած երկիր, որտեղ դեռ մինչև այժմ էլ ուժեղ կերպով պահպանվել են ֆեոդալիզմի մնացուկները։ Բնակչության չորսհինգերրորդական մասը զբաղված է գյուղատնտեսության մեջ։ Երկրում մշակվում

են՝ գարի, խուրմա, ցորեն, բրինձ, բամբակ և գյուղատնտեսական այլ կուլտուրաներ։

Երկրի մշակելի հողատարածությունները կազմում են 12 միլիոն հեկտար։ Դրանից փաստորեն օգտագործվում է միայն 3 միլիոն հեկտար, որի մեծ մասը գտնվում է խոշոր հողատերերի և զանազան ցեղապետների ձեռքին։ Աշխատավոր գյուղացիները հողը վերցնում են ծանր պայմաններով և նրա օգտագործման համար վճարում են ստացած բերքի մոտ 70 տոկոսը։ Բաղդադի շրջակայքում գտնվող հողատարածությունների մեծ մասը գտնվում է անգլիական կապիտալի ձեռքում։

Իրաքի ընդերքը չափազանց հարուստ է հանքային հանածոներով և հատկապես նավթով։ Սակայն երկիրը չունի իր ազգային ծանր արդյունաբերությունը։ Նավթի հարստությամբ Իրաքը աչքի ընկնող տեղ է գրավում աշխարհում։ Երկրի նավթի պաշարները գնահատվում են 2 միլիարդ 650 միլիոն տոննա։ 1955 թվականին նավթի հանույթը կազմել է 34 միլիոն տոննա, 1956 թվականին՝ 31 միլիոն տոննա։ Իրաքի էկոնոմիկայի զարգացումը խոչընդոտվել է իմպերիալիստների գաղութային քաղաքականության պատճառով։ Անգլիական իմպերիալիստներն այդ երկիրը վեր էին ածել Անգլիայի ագրարային-հումքային կցորդի և իրենց ապրանքների վաճառահանման շուկայի։ Այսպես, օրինակ, 1955 թվականին Իրաք է ներմուծվել այնպիսի ապրանքներ, որոնց արժեքը վեց անգամ գերազանցում է երկրի արտահանած ապրանքների արժեքը։



Իրաքի ամբողջ տերիտորիան բաժանված է անգլիական, ամերիկյան և ֆրանսիական նավթային մոնոպոլիաների՝ «Իրաք պետրոլեում կոմպանի», «Հանեկին օյլ» և այլ ընկերությունների միջև։ Նավթային մոնոպոլիստները հանդիսանում էին երկրի փաստացի տերերը։

Իրաքի 13 հազար նավթագործները անխիղճ կերպով շահագործվում են այդ մոնոպոլիստների կողմից։ Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ ապրուստի մինիմումը երկրում 1954 թվականին բարձրացել է 4,3 անգամ այն դեպքում, երբ բանվորների ու ծառայողների աշխատավարձն այդ նույն ժամանակամիջոցում ավելացել է միջինը 2 անգամ։

Երկրի բնակչությունը համարյա լիովին զրկված էր բժշկական օգնությունից։ Երկրում լայնորեն տարածված են թոքախտը, տրախոման և այլ հիվանդությունները։ Բնակչության գերակշռող մասը (մոտ 83 տոկոսը) անգրագետ է։

Առաջին համաշխարհային պատերազմից հետո անգլիական կառավարությունը հակառակ իր բազմաթիվ այն խոստումներին, որոնք վերաբերվում էին Իրաքում անկախ պետության ստեղծելու հարցին, և խախտելով հաշտության պայմանագիրը, զորքեր մտցրեց Իրաք, օկուպացրեց նրա նավթով հարուստ տարածությունները և երկիրը դրեց կիսագաղութային կախման մեջ։

1920 թվականին Անգլիան ձեռք բերեց նոր ստեղծված Իրաքի պետության «մանդատը» և օրինականաց-

րեց այդ երկրի նկատմամբ իր գաղութային գերիշխանությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ուժեղ կերպով սկսեցին Իրաք ներթափանցել ԱՄՆ-ի մոնոպոլիստները, որոնք աստիճանաբար նեղելով անգլիական և ֆրանսիական մոնոպոլիստներին, սկսեցին իրենց ձեռքը գցել ոչ միայն նավթի, այլև բրդի, կաշվի և գյուղատնտեսական այլ մթերքների արտահանման և արդյունաբերական ապրանքների ներմուծման մենաշնորհը։

Զավթելով երկրի հիմնական կենսական աղբյուրները, իմպերիալիստները ոսկու և սվինի օգնությամբ տնօրինում էին Իրաքի ներքին կյանքն ու պետության արտաքին քաղաքականությունը։ Իմպերիալիստների ակտիվ պաշտպանության վրա էր հիմնված նախկին թագավոր Ֆեյսալի և անգլիական իմպերիալիզմի շահերի պաշտպան, Իրաքի ժողովրդի ոխերիմ թշնամի Նուրի Սաիդի դաժան դիկտատուրան։

1954 թվականի ապրիլին ԱՄՆ-ը Իրաքի կառավարող շրջանների հետ կնքեց այսպես կոչված ռազմական «օգնության» վերաբերյալ համաձայնագիրը, որով Իրաքը իր համաձայնությունը տվեց մասնակցելու Միջին և Մերձավոր Արևելքում արևմտյան իմպերիալիստների կողմից ստեղծվող ռազմական բլոկին։

1955 թվականի հունվարին Իրաքի կառավարող շրջանները հնազանդորեն կատարելով Արևմուտքի իրենց տերերի ցուցումը, խզեցին դիվանագիտական հարաբերությունները Սովետական Միության հետ։



1955 թվականի փետրվարի 24-ին Բաղդադում Թուրքիայի և Իրաքի միջև կնքվեց մի համաձայնագիր, որով Իրաքը պաշտոնապես միացավ թուրք-պակիստանյան ագրեսիվ պակտին։ 1955 թվականի ապրիլին այդ պակտին միանալու մասին հայտարարություն արեց անգլիական կառավարությունը։ Իրաքի ամբողջ տերիտորիան և զինված ուժերը Նուրի Սաիդի և նրա նման ծախու կառավարողների կողմից սիրով հանձնվեց իմպերիալիստներին՝ նրանց ագրեսիվ պլանների իրագործմանը ծառայեցնելու համար։ Այդպես հիմք դրվեց Բաղդադի տխրահռչակ պակտին, որին իմպերիալիստների ռազմական պլաններում կարևոր դեր էր հատկացված Արևելքի ժողովուրդների ազատագրական պայքարը խեղդելու և սոցիալիստական լագերի երկրների դեմ պատերազմ վարելու գործում։

Միաժամանակ անգլո-ամերիկյան իմպերիալիստները ձգտում էին Իրաքը վերածել «Տրոյական ձիու» որի միջոցով նրանք աշխատում էին պառակտում առաջացնել արաբական ժողովուրդների մեջ և քայքայել նրանց կուռ միասնությունը։ Նրանց այդ մտադրությունը լրիվ պարզ դարձավ այն ժամանակ, երբ Եգիպտոսի և Սիրիայի պառլամենտները ընդառաջելով իրենց երկրների ժողովուրդների ցանկություններին, որոշում կայացրին այդ երկու երկրները միավորելու և Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա ստեղծելու մասին։ Իմպերիալիզմի հլու կամակատար Նուրի Սաիդը ի

հակակշիռ այդ միացյալ արաբական պետության, արհեստականորեն ստեղծեց այսպես կոչված Արաբական ֆեդերացիան, որի կազմի մեջ մտան Իրաքը և Հորդանանը։

Իրաքի աշխատավոր ժողովուրդը և բոլոր հայրենասերները երբեք չեն դադարեցրել իրենց պայքարը իմպերիալիզմի գործակալների դեմ, հանուն երկրի ազգային անկախության և ինքնուրույնության։ Իրաքի ժողովրդի ազգային ազատագրական պայքարը նոր թափով ծավալվեց 1956 թվականի վերջերին, Եգիպտոսի նկատմամբ անգլո-ֆրանսիական ագրեսիայի օրերին և դրանից հետո։ Իրաքի հայրենասերներն այդ ժամանակ Նուրի Սաիդի կառավարությունից պահանջում էին անհապաղ խզել հարաբերությունները Անգլիայի հետ, դուրս գալ Բաղդադի իմպերիալիստական պակտից և բոլոր ուժերով պաշտպանել Եգիպտոսի արդար գործը։ Ներքաղաքական դրությունն Իրաքում էլ ավելի սրվեց, երբ հայտնի դարձավ, որ Սիրիայի անկախ պետության դեմ նյութած իմպերիալիստական դավադրության ակտիվ մասնակիցներից մեկը Իրաքն է։ Իրաքի հուզված աշխատավորները , ինտելիգենցիան, բանակի որոշ զորամասեր համառորեն պահանջում էին պրեմիեր-մինիստր Նուրի Սաիդի հրաժարականը։ Երկրի խոշոր քաղաքներում՝ Բաղդադում, Մոսուլում գործադուլ էին անում բանվորներն ու ծառայողները։ Հորդանանում գտնվող զորամասերը հրաժարվեցին կատարել Նուրի Սաիդի հրամանը՝ Իրաք



վերադառնալու մասին։ Սակայն իմպերիալիստներին և նրանց տեղական գործակալներին հաջողվեց այդ անգամ ևս ճնշել ժողովրդական ազատագրական շարժումը։

Ինչպես վերջերս հայտնի դարձավ, Իրաքի բանակի մի խումբ հայրենասեր սպաներ ամբողջ բանակի և ժողովրդի ակտիվ աջակցությամբ տապալեցին ռեակցիոն թագավորական իշխանությունը երկրում և Իրաքը հռչակեցին ռեսպուբլիկա։ Իրաքի ռեսպուբլիկայի նորաստեղծ կառավարության առաջին քայլը եղավ Բաղդադի ագրեսիվ պակտից Իրաքի դուրս գալը, որի լուրը ցնծությամբ դիմավորեց երկրի ամբողջ ժողովուրդն ու բանակը։ Աբդել Քերիմ Կասեմի գլխավորած նոր կառավարությունը հրապարակեց մի շարք դեմոկրատական միջոցառումներ. վերացվեցին թագավորական իշխանության սահմանած բոլոր տիտղոսներն ու կոչումները, արգելվեց ռեակցիոն թերթերի հրատարակությունը, Լիբանանի ազատասեր ժողովրդի ապստամբությունը ճնշելու համար այնտեղ գտնվող իրաքյան զորամասերը ետ կանչվեցին և այլն։

Իրաքի Ռեսպուբլիկայի հռչակումը ուրախությամբ ընդունեցին սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդները և աշխարհի բոլոր խաղաղասեր ժողովուրդները։ Իրաքի ռեսպուբլիկան արդեն միջազգային լայն ճանաչում է գտել շատ երկրների կառավարությունների կողմից։ Նրա ճանաչման մասին անմիջապես պաշտոնական հայտարարություն արեցին



ՍՍՌՄ-ը և սոցիալիստական լագերի բոլոր պետությունները, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան, Հնդկաստանը, Ինդոնեզիան, Սուդանը, Եմենը և այլ երկրներ։

Իրաքում ռեսպուբլիկա հռչակվելու լուրը կատաղության ալիք առաջ բերեց իմպերիալիստների լագերում։ Ցանկանալով ինչ գնով էլ որ ուզում է լինել անմիջապես խեղդել Իրաքի և Լիբանանի ազատասեր ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը և վերականգնել ռեակցիոն-ոստիկանական նախկին ռեժիմը Իրաքում, ինչպես նաև ծախու կառավարողների տիրապետությունը Լիբանանում, ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանները անհապաղ զորքեր մտցրին Լիբանան և Հորդանան ու բացահայտ ագրեսիա սկսեցին այդ երկրներում։

Աշխարհի բոլոր խաղաղասեր ժողովուրդները բարձրացրին իրենց բողոքի հուժկու ձայնը ի պաշտպանություն Իրաքի, Լիբանանի և Հորդանանի ժողովուրդների ազատագրական պայքարի և պահանջեցին անհապաղ դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը այդ երկրներից։ Իմպերիալիստների համար լուրջ նախազգուշացում հանդիսացավ ՍՍՌՄ-ի կառավարության ձեռնարկած արագ միջոցառումները իմպերիալիստական ագրեսիայի հետագա ծավալումը կանխելու համար։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ